### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆԸ

Պելֆոնթէնէն կը հեռաձայնեն որ օդափոխութեան կայանին մանուկները ողջ առողջ հասած են :

## «Ո՞ՒՐ ԵՍ, ՄԱՅՐ ԻՄ...»

Գրեց՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Պատկերազարդ եւ շքեղ տպագրութիւն :

Գինը 100 փրանք

(Փոստով ղրկուելու պարագային՝ 25 փրանք աւելի) :

Դիմել Յառաջի խմբագրութեան հասցէով :

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐԸ

ԱՏԼԱՆՏԵԱՆԻ ԱՓԻՆ

Վայրը՝

Olonne-sur-Mer (Vendée)

3 Օգոստոսէն 14 Սեպտեմբեր

Արձանագրութեան եւ մանրամասնութեան համար դիմել՝

Edouard Mavian, 116 Rue Réaumur,
Paris 2ème. CEN 06-42

### ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿՈՒԹ. ՄԻՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԱՆ ՃԱՇԸ

21 Յուլիս Կիրակի ամբողջ օրը, Պոմոնի Եկեղեցւոյ կից՝ Սահակ Մեսրոպ սրահին մէջ :

Համադամ կերակուրներ

Հայկական ջերմ մթնոլորտ, գեղարուեստական բաժինով :

Արձանագրուիլ ամէնէն ուշը մինչեւ 18 Յուլիս, Պ. Յ. Հացագործեանի մօտ,

15 Rue Longues des Capucines
CO 0578

ինչպէս նաեւ վարչութեան անդամներուն մօտ :

### ՆՈՒԷՐՆԵՐ

Փարիզի Հայ Աղք. Ընկերակցութեան

Սիմոն Զիլինկիրեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի Փարիզի Հայ Աղք. Ընկերակցութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները՝ Պ. Սուրէն Զիլինկիրեանէ յիսուն հազար Փր : Պ. Արմենակ Աճէմեանէ հինգ հազար : Պ. Մկրտիչ Գազանճեանէ երեք հազար Փր. :

Պ. Ա. Հարէնց երեք հազար փրանք :

Տէր եւ Տիկին Արա Աթալլահ երկու հազար փրանք (Մոնմորանսիի ծերանոցին) :

Նոյն տխուր առթիւ Պ. Մկրտիչ Գազանճեան կը նուիրէ երկու հազար Փր. Եկեղեցւոյ դպրոցին : Այս վերջինը ստանալ «Յառաջ»էն :

●

ԿՐԸՆՈՊԼԻ Կապ. Խաչի մասնաճիւղին դպրոցի տարեվերջի քննութեանց օրը եղան հետեւեալ նուէրները .—

Հ. Մ. Ը. Մ.ի կողմէ երկու հազար Փր, Ազգային Միութիւն 7000, Տէր եւ Տիկին Սիսլեան երկու հազար, Պ. Մարտիրոսեան հազար, Պ. Աքէլէկեան հազար փրանք դպրոցին ֆոնտին :

Իսկ Պ. Միքայէլեան հազար փրանք, Պ. Պ. Մխքճեան հազար փրանք, մրցանակներու յատկացուելու համար :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԷՆ ԺԵՐՈՄ (Մարսէյլ) .— Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէի դաշտահանդէսը Յուլիս 21ին Սէն Ժիւսթ Ավընիւ Բօրօ Պար Շալէի պարտէզին մէջ :

✕ Խանասորի տարեդարձը կը տօնուի Վալանսի մէջ Յուլիս 21ին :

ՏԱՐՕՆ – ՍԱՍՆՈՅ ԶՕՐԻ Հայր. Միութեան Հերոսներու Յիշատակի հանդէսը՝ 28 Յուլիս Կիրակի Սէն Անտրէի Պէլվէտէր պարտէզի մէջ : Մարսէյլ :

### ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ԱՌԻԹՈՎ

Վարձու է Քանի մէջ (Քոթ տ'Ազիւր), Յուլիսի համար սենեակ մը, խոհանոց մը, Օգոստոսի համար երկու սենեակ խոհանոց մը, (ամբողջ յարկաբաժինը), Սեպտեմբերի համար դարձեալ սենեակ մը խոհանոցով : Դիւրամատչելի պայմաններ :

Դիմել «Յառաջ»ին :

Imp. ARAXES, 46, Rue Richer Paris-9

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ—ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Բովանդակութիւն Մայիս - Յունիսի (թիւ 185 – 186) .— Ի՞նչ է հանճարը (Է. ՎԷՌՀԱՌՆ) .— Փորին մէջ ջուր կայ (Ն. Բ. Բ.) .— Մի չարչարէք աղիքները (ՏՔԹ. ՊԼՈՆՏԷԼ) .— Օդափոխութիւն (ՏՈՔԹ. ՍԵՐՈԲԵԱՆ) .— Երեւանի հիւանդանոցները (ՇԱԽՈՅԵԱՆ) . — Փա՛ռք կեռասին (Շ. ՆԱՐԴՈՒՆԻ) .— Կեռասները (Ա. ՏՕՏԷ) .— Մեղուներուն կաթը հրաշագործ դեղ (ՏՈՔԹ. Շ. ԱՅՎԱԶԵԱՆ) .— Քրտնելուն կարեւորութիւնը (ՏՈՔԹ. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ) .—Գլխու պտոյտ (ՏՈՔԹ. ՔՈՐՈՆ) .— Գեղեցիկ սեռը եւ զօրաւոր սեռը (Հ. Բ.) .— Երբ իժը խայթէ ... (ՔԻՐԻՇՃԵԱՆ) :

Տարեկան բաժնեգինը հազար փրանք Ֆրանսայի համար, 1200 փրանք արտասահմանի համար :

Դիմել Շ. Նարդունիի, Յառաջի հասցէով :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Ժիրայր Մուրատեան, իր երկու զաւակներուն մկրտութեան առթիւ տասը հազար Փր. նուիրած է Ալֆորվիլի աղքատներուն :

### ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ

## Ս. ՂԱԶԱՐ (ՎԵՆԵՏԻԿ)

Վերջին երկու տարիներու յաջողութիւնէն քաջալերուած, մանաւանդ երիտասարդութեան մօտ, այս տարի՝ կրկին կը կազմակերպուի ուխտագնացութիւնը :

Խումբը պիտի այցելէ Հռոմ, Փոմփէյ, Նափոլի եւ վերջին երկու շաբաթը Վենետիկ :

Մեկնում՝ Օգոստոս 8ին, եւ վերադարձ՝ Սեպտեմբեր 1ին :

Մանրամասնութեան եւ արձանագրութեանց համար դիմել՝

Dr. Aram Djindjian
29 rue Bleue, PRO 79-09
G. Atamian
53 rue Chateaudun, TRI 57-74
H. Basmadjian
11, Rue Béranger
Arnouville-les-Gonesse (S. et O.)
Mr Taron
58, Bd Serrurier PARIS-19

### ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕԴԱՓ. ԿԱՅԱՆ

Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլէի օդափոխութեան կայանին մանուկներու Ա. խումբը կը մեկնի, երկուշաբթի առաւօտ, 8 Յուլիսին :

Ժամադրավայր, Հայ Կարմիր Խաչի կեդրոնը, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ, ժամը 8ին :

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Պ. Մինաս Աթալլահ կը նուիրէ երկու հազար Փրանք Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլէի օդափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի, ողբ. Սիմոն Զիլինկիրեանի մահուան առիթով :

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԾԱՆՕԹ ԵՐԳԻՉ ԱՒԵՏԻՍ ՔԻՒՓԷԼԵԱՆԻ



10 երգերը մէկ երգապնակի վրայ
ՄԻՔՐՈՍԻՅՈՆ

Ա. ՔԻՒՓԷԼԵԱՆ երգած է 10 երգեր, բոլորն ալ բուռն ծափերու եւ կրկնութիւններու արժանացած Փարիզի հայկական հանդէսներուն մէջ, երաժիշտ Պ. ԱՒԵՏԻՍ ՄԵՍՈՒՄԵՆՑԻ տնօրէնութեամբ եւ Փարիզի սէնֆօնիք նուագախումբի ընկերակցութեամբ :

ԳԻՆ 2200 ՖՐԱՆՔ

Իւրաքանչիւր երգապնակի հետ կը տրուի 10 երգերու բառերը պարունակող երգարաններ :

1.— Կիլիկիա, 2.— Ես քեզ տեսայ, 3.— Ով սիրուն, սիրուն, 4.— Ողջո՛յն, Երեւան, 5.— Հայու աղջիկ, 6.— Հայրենիք, 7.— Զիս աստւմ, 8.— Առ նազելին, 9.— Աղբիւրի մօտ, 10.— Աշուղական :

Կը ծախուի Պ. Ա. ՔԻՒՓԷԼԵԱՆի մօտ, Ալֆորվիլի եկեղեցիին ճիշդ դիմացի տունը եւ գրատուններու :





տեսուի չարժավարներուն համար հրանիւթի գիները պակսեցնել, սակայն կը թուի թէ Ելմտական նախարարութիւնը նման առաջարկ մը պիտի մերժէ :

× Զանազան տեսակի քարածուխներու գիները կրնան յանկարծակի յաւելում մը կրել՝ մինչեւ յառաջիկայ շաբաթ :

## ՀԱՄԱՅՆԱՎԱՐ ՉԻՆԱՍՏԱՆ ԽԼՐՏՈՒՄԻ ՄԷՋ

Համայնավար Չինաստանի մէջ, «աջակողմեան տարրեր»ու առաջին դատապարտութիւնները յայտարարուեցան, Համայնավար կուսակցութեան մէկ յանձնաժողովին կողմէ :

Համայնավարական քաղաքչութեան զօրաւորագոյն ղեկավարը՝ Լիւ Թինկ Եի, Փէքինի Ազգ. ժողովի առջեւ յայտարարեց.— «Աջակողմեաններու բռնած դիրքը հակասահմանադրական է. անոնք պիտի դատապարտուին, Սահմանադրութեան օրէնքներուն համաձայն»: Կուսակցական քաղաքչութեան ղեկավարը ճշդելով անոնց յանցանքը, յատկապէս շեշտեց, թէ «անջատողական» շարժումներ ստեղծողները յարաբերութեան մէջ են Չինաստանէն դուրս գտնուող «աջակողմեան»ներու հետ, որոնք «յետադիմական» եւ պայքարի «վտանգաւոր» թշնամիներ են եւ կրնան զինեալ բախումներ ստեղծել :

Փէքինի մէջ սկսած մաքրագործումներէն ի վեր, առաջին անգամ ըլլալով այսքան ծանր մեղադրանք մը կ'ըլլայ՝ պաշտօնապէս: Ազատ աշխարհի քաղաքական շրջանակներուն համաձայն, այս մեղադրանքը նախաբանն է մաքրագործումներու՝ որոնք սկսած են արդէն եւ կը շարունակուին Համայնավար Չինաստանի անծայրածիր տարածութեան վրայ :

Ինչպէս կը տեսնուի, Համայնավար Չինաստանի ղեկավարները նոյնիսկ կանգ պիտի չառնեն՝ դատապարտելու համար անօթութենէ տառապող մարդիկը, որոնք բողոքի ցոյցեր ըրած էին :



## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐԸ

ԱՏԼԱՆՏԵԱՆԻ ԱՓԻՆ

Վայրը՝

Olonne-sur-Mer (Vendée)

3 Օգոստոսէն 14 Սեպտեմբեր

Արձանագրութեան եւ մանրամասնութեան համար դիմել՝

Edouard Mavian, 116 Rue Réaumur, Paris 2ème. CEN 06-42



Imp. ARAXES, 46, Rue Richer Paris-9e

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

« Շ. Միսաքեան » խումբի կազմութեան առթիւ :

Անիէռ Պուա Քոլոմպի Հ. Յ. Դ. Արամ ենթակոմիտէի ընկերական խնջոյքը Յուլիս 13ին, ժամը 21ին ընկերվարականներու սրահը 149պիս, Ավընիւ Արժանթէօյ, Անիէռ :

Կը հրաւիրուին շրջաններու կոմիտէներն ու խումբերը : Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը :

Ծախքերու մասնակցութիւն :

## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

Խանասորի Արշաւանքի 60ամեակին առթիւ

Կը տօնուի Շաւիլի անտառին մէջ, Հ. Յ. Դ. Շաւիլի «Արղութեան» խումբին կողմէ :

21 Յուլիս, կիրակի օրը առաւօտէն մինչեւ երեկոյ: Գեղարուեստական բաժին, երգ, պար եւ բարձրախօս :

Ճոխ եւ մատչելի պիւֆէ :

Մոնփարնասէն առնել շոգեկառք եւ իջնել Շաւիլի կայարանը, Փոն տը Սէվրէն առնել Վերսայլ գացող 171 թիւ օթօպիւսը եւ իջնել Փիւի Սան Վէն, Շավիլ :

Հարցնել Շաւիլի գերեզմանատունը :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս կիրակի, տօն Սրբոց Թարգմանչաց, մասնաւոր հանդիսաւոր հոգեհանգիստ կը կատարուի Մայր Եկեղեցիի հիմնադիր - բարերար ողբ. Ասպետ Վահան Խօրասանճեանի եւ իր գերդաստանի ննջեցեալներուն յիշատակին, մասնակցութեամբ երկսեռ երգչախումբին, որ Ս. պատարագը կ'երգէ բազմաձայն, ղեկավարութեամբ Պ. Վ. Սարգսեանի: Այս տարուան բացառիկ հոգեհանգիստը ունի նաեւ ոչ - կրօնական մեծարանքի բաժին, հանգուցեալ մեծանուն ազգասէրին մօտաւորագոյն ազգականներուն Ֆրանսայէն ու Պելժիքայէն հրաւիրուելուն առիթով, մարմարեայ Զարխափանի նոր խորանին զետեղման պատեհութեամբ :

### ԵՂԱՆԱԿԻ ՄԵԾ ԴԱՇՏԱՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Համաչարսանճագի Հայր. Միութեան :

Այս կիրակի ամբողջ օրը, Ռէսթօրան տէ Քրոթ Մօնար, Թրուա Լիւֆ, զովասուն եւ կանաչազարդ պարտէզին մէջ :

Կը նախագահէ Ս. ՊՕՅԱՃԵԱՆ

Կը խօսի Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական ճոխ ու խնամուած բաժին: Սիրայօժար մասնակցութիւնը կը բերէ Պօմոնի Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբը: Երգ, նուագ, արտասանութիւն, անակնկալ :

Առաւօտեան պուլի մրցում :

Պուլ ունեցողներէն կը խնդրուի միասին բերել :

Հայկ. եւ Եւրոպական պարեր :

Ճոխ պիւֆէ, շամփուրով խորոված :

Մուտքը ազատ է :

Ծանօթ.— Առնել 7 թիւ օթօպիւսը եւ իջնել վերջաւորութեան, Շէ Մարէն, Ռութ տէ վ'Օլիվ :

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.—

Տէր եւ Տիկին Պետրոս Ալոյեան կը ծանուցանեն թէ այս կիրակի Փրատոյի Մայր եկեղեցւոյ մէջ, հոգեհանգստեան պաշտօն եւ պատարագ տեղի պիտի ունենան իրենց վաղամեռիկ զաւկին հոգւոյն եւ յիշատակին համար: Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները :



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Տէսինի Տարօն - Տուրուբերան Հայր. Միութեան մասնաճիւղի ընտանեկան մեծ դաշտահանդէսը, Օգոստոս 4ին կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ Քափէ Լամարկի մօտ զովասուն ծառաստաններուն տակ :

Մանրամասնութիւնը յաջորդով :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Արմենակ Համբարձումեան կը ծանուցանէ թէ այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ մասնաւոր հոգեհանգիստ պիտի կատարուի, ի յիշատակ իր ողբացեալ կնոջ, ծնողաց եւ Համբարձումեան գերդաստանին բոլոր ննջեցելոց :

Տէր եւ Տիկին Վահէ Սիրաքեան, Տէր եւ Տիկ. Ժորժ Պետարեան, Տէր եւ Տիկին Գարլօ Սիրաքեան, Ինճէեան, Թէրզեան ընտանիքները, ինչպէս նաեւ իր բազմաթիւ աշակերտները եւ բարեկամները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց քրոջ, հօրաքրոջ, ազգականին, ուսուցչուհիին:

Օր. ԷՊՐՈՒ ՍԻՐԱՔԵԱՆԻ
(Ծանօթ դաշնակահարուհի)

մահը՝ որ տեղի ունեցաւ Յուլիս 10ին, 64 տարեկանին, իր բնակարանը 43 բիւտ Մոպէօժ :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր շաբաթ առաւօտ, ժամը 8·45ին, Փարիզի Հայոց եկեղեցին: Մարմինը պիտի ամփոփուի Ռենսիի գերեզմանատունը, ընտանեկան դամբարանին մէջ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

Խանասորի արշաւանքի տարեդարձի առթիւ, Վիէնի կոմիտէն կազմակերպած է մեծ դաշտահանդէս մը, Յուլիս 21, կիրակի մինչեւ երեկոյ :

### ԱՄԱՎԵՐՋԻ ԴԱՇՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի «Ահարոնեան» խումբին կողմէ :

Այս կիրակի, դէպի Պուարան :

Մեկնում Կառ տիւ Նորէն (Հօլ Պանլիէօ) ժամը առտուան 8·30ին :

Կը հրաւիրուին Նոր Սերունդի ընկերները եւ համակիրները :

### ՆՈՒԷՐ

Տիկին Թագուհի Եաղլեան Պոլսէն ժամանած իր մօրը Բրաբիոն Եաղըճեանի տասներորդ տարելիցին եւ պարագաներուն յիշատակին համար Հազարական Փըրանք կը նուիրէ երկու ծերանոցներուն : Ստանալ «Յառաջ»էն :

կանայէս տուաւ իր համաձայնութիւնը՝ Երրաթոմին եւ Հաաարակաց Շուկային ։ Սակայն իր վաւերագիրները ներկայացնելու համար, Գերմանիա պիտի սպասէ որ միւս հինգ պետութիւններն ալ վաւերացնեն Միացեալ Եւրոպայի նախածրագիրը ։

× Վաղը, Յուլիս 22, Մոսկուայի մէջ կը սկսին Արեւմտ. Գերմանիոյ եւ Խ. Միութեան ներկայացուցիչներուն խորհրդակցութիւնները, որոնց գլխաւոր առարկան է երկու Գերմանիաներու վերամիացումը ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ մէջ բանուորական չարժումներ գոյութիւն ունին տակաւին. վերջերս ձերբակալուած են հինգ հարիւր աշխատաւորներ ։

ՆԻՍ – ՓԱՐԻԶ վայրաշարժի արկածին զոհերուն թիւը բարձրացած է 16ի ։

ԱՐԵՒԵԼ. ԳԵՐՄԱՆԻՈՅ մէջ կը յայտարարուի, թէ «հիմնական փաստեր» կան, որ զօր. Շփայտըլ մասնակցած է Եուկոսլաւիոյ Ալեքսանտր Թագաւորին սպանութեան ։

ՖՐԱՆՍԱՅԻ ընկերային տագնապը կը շարունակուի ։

ԱՐԹԸՐ ՄԻԼԸՐ, ամերիկացի ծանօթ գրագէտը, մէկ ամիս բանտարկութեան դատապարտուեցաւ Նիւ Եորքի դատարանին կողմէ ։ Մարլին Մընրոյի ամուսինը մերժած էր յայտնել դատարանին այն անձնաւորութեանց անունները որոնց հանդիպած էր համայնավար հաւաքոյթներու մէջ ։ Գրագէտը վերաքննութեան դիմեց ։

ՖՐԱՆՍԱՅԻ ՇՐՋԱՆԸ վերջացաւ Շաբաթ օր ։ 120 հոգիի վրայ, վերջին հանգրուանին մնացած էին միայն 56 ։ Շրջանը շահեցաւ Ֆրանսացի՝ Ժագ Անքթիլ ։

ՄԱԿԻ դիւանը պաշտօնապէս յայտարարեց, թէ ֆրանսական զօրաբաժիններ չկան Սուրիա – Իսրայէլ սահմանագլուխին վրայ ։

### ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ
## Ս. ՂԱԶԱՐ (ՎԵՆԵՏԻԿ)

Վերջին երկու տարիներու յաջողութենէն քաջալերուած, մանաւանդ երախտագիտութեան մտօք, այս տարի՝ կրկին կը կազմակերպուի ուխտագնացութիւնը ։

Խումբը պիտի այցելէ Հռոմ, Փոմփէյ, Նափոլի եւ վերջին երկու շաբաթը Վենետիկ ։

Մեկնում՝ Օգոստոս 8ին, եւ վերադարձ՝ Սեպտեմբեր 1ին ։

Մանրամասնութեանց եւ արձանագրութեանց համար դիմել՝

Dr Aram Djindjian
29 rue Bleue, PO 79-09
G. Atamian
53 rue Chateaudun, TRI 57-74
H. Basmadjian
1, Rue Béranger
Arnouville-les-Gonesse (S. et O.)
Mr Taron
58, Bd. Serrurier PARIS-19

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Նիսի եւ շրջանի Կրօն. Ընկերակցութեան վարչութիւնը կը տեղեկացնէ Նիսի հայ ծնողներուն, թէ փոքրիկներու համար հայերէնի դասընթացքը կը շարունակուի ամրան արձակուրդի շրջանին եւս ։ Տեղեկութեանց համար դիմել Նիսի Հայոց եկեղեցին ։ Այս առթիւ կրնան օգտուիլ նոյնպէս արձակուրդով Նիս եկող ընտանիքներու փոքրերը ։



## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

Խանասորի արշաւանքի 60 ամեակին առթիւ ։

Կազմակերպուած Լիոնի եւ Տէսինի Հ. Յ. Դ. կոմիտէներուն կողմէ ։

Կիրակի, 28 Յուլիս, ամբողջ օրը, Տէսինի ծանօթ զովասուն պուրակին մէջ ։

Բարձրախօս, առատ ուտելիք եւ զուարճացուցիչ ըմպելիներ ։

Շրջանի հայութիւնը կը հրաւիրուի այդ օրը դէպի դաշտահանդէս ։

Լիոնի օթօքարը կը մեկնի ժամը ճիշդ 10ին, Փլաս Կիշառէն ։

## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

Նախաձեռնութեամբ Տարօն Սալնոյ Ձոր Հայր. Միութեան, հերոսներու յիշատակի օրը կը տօնուի Սէնթ Անտրէի Պէլվէտէր պարտէզին մէջ, Կիրակի, 28 Յուլիս առաւօտէն մինչեւ երեկոյ ։

Կը խօսին Պ. ՍԱՀԱԿԵԱՆ եւ Գ. ՇԵԽԻԿԵԱՆ ։

Կը նախագահէ Ե. ՄԵԼԳՈՆԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, նուագ, արտասանութիւն, անակնկալներ ։

Ծանօթ.— Առնել 25 թիւ օթօպիւս Փլաս տ'Էքսէն եւ իջնել վերջաւորութիւնը ։

### ԽԱՆԱՍՈՐԻ ՎԱԹՍՈՒՆԱՄԵԱԿԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կիրակի, 28 Յուլիս, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան կոմիտէին ։

Տեղի կ'ունենայ Սէնիզէի ճամբուն վրայ, Շաթօ Պուրկարտի գեղեցիկ փարքին մէջ ։

Կը նախագահէ ընկ. Ղ. ԹՈՐՈՍԵԱՆ
Կը խօսի ընկ. Ս. ՍԻՍԼԵԱՆ

Գեղարուեստական բաժին ։ Ճոխ պիւֆէ ։

Օթօքառները կը մեկնին ժամը 8.30ին, Շըմէն տը լա Փլէն, 8.45 գպրոցին առջեւ, 9ին Փլաս Վեռտէօն 9.15 Բուռ Պերիա եւ Ժան Ժոռէս ։ Պիտի կենան նաեւ սինեմա Փաքսի առջեւ ։

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ ։

Ոչ մէկ աճուրդ ։

### ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է

Շավիլի « Հերոսներու օրը », Յուլիս 28ին ։

Imp. ARAXES, 46, Rue Richer Paris-9e

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Գասապեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ հոգեհանգստեան պաշտօն եւ պատարագ տեղի պիտի ունենայ իրենց զաւկին՝

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱՍԱՊԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ ։ Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Վիէնի Ֆ. Կ. Խաչի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները ընկ. Այաեանի զաւկին ամուսնութեան առթիւ Պ. Պ. Մարգարեանէ, Ե. Այանեանէ, Գիւլհանճեանէ, Այանեանէ, Թերզիեաղուլեանէ, Ասլանեանէ հագարական ֆրանք, գումար 7000 ֆրանք ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Անիէռ Պուա Քոլոմպի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր անդամուհիները այս երեքշաբթի ժամը 18ին, անդամուհի Օրմանճեանի բնակարանը, Քոլոմպ ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼ.— Խանասորի արշաւանքի տարեդարձը կը տօնուի այս տարի մեծ պատրաստութեամբ, օգոստոս 4ին, ամբողջ օրը ։ Այժմէն կը թելադրենք մեր շրջանի բոլոր ենթակոմիտէներուն եւ խումբերու վարչութեանց, միջոցներ ձեռք առնել երթեւեկը ապահովելու համար, իսկ եթէ դժուարութեանց հանդիպին, թող դիմեն Շրջ. Կ.ին ։

Մանրամասնութիւնները մօտ օրէն ։

դրողը խոստովանած է, թէ խորայէլեան լրտես մըն էր :

ԳԱՀԻՐԷԻ մէջ հարսանիքի մը ընթացքին շէնքը փլելով պատճառ դարձած է 62 հոգիի մահուան : 68 ուրիշներ վիրաւորուած են, որոնց 17ը՝ մտահոգիչ :

ՖՐԱՆՍԱ տակաւին պաշտօնական ոչ մէկ որոշում տուած է Թունուզի Հանրապետութիւնը ճանչնալու համար, սակայն կասկածէ դուրս է, որ մօտ ատենէն պիտի ճանչնայ զայն :

ՃԱՓՈՆԻ մէջ ողողումները հետեւանքով 150.000 տուներ փլած են : 2 – 4 մեթր բարձրութեամբ՝ ջուրը ծածկած է ընդարձակ տարածութիւն մը : Շարժեր ալ պատահած են : Զոհերու եւ կորսուածներու թիւը յայտնի չէ :

ԱՆԳԼԻՈՅ հանրակառքի շարժավարներուն գործադուլը վերջացաւ :

ՀԱՄԱՅՆԱՎԱՐ ՉԻՆԱՍՏԱՆԻ մէջ աւազակները զինեալ յարձակումներ գործած են զանազան վայրերու վրայ : Անօթի ամբոխը կը յարձակի պետական շտեմարաններու վրայ եւ գողութիւն կ'ընէ : Ոստիկանութիւնը դժուարութեան կը հանդիպի «հակայեղափոխական աւազակները» զսպելու համար :

ՍԱՇԱ ԿԻԹՐԻԻ յուղարկաւորութիւնը կատարուեցաւ շաբաթ առտու Մոնմարթրի գերեզմանատան մէջ : Ուրբաթ ամբողջ օրը աւելի քան 12.000 հոգի եկած էին իրենց վերջին յարգանքի տուրքը բերելու մեծ թատերագիրին դագաղին առջեւ : 7 դամբանականներ խօսուեցան եւ արարողութիւնը տեղի ունեցաւ իր բնակարանին մօտ, ուր պատրաստուած էր նաեւ մասնաւոր ամբիոն մը աւելի քան հազար հիւրերու համար : Ժամը 12ին տեղի ունեցաւ թաղումը :

ԾԱՆՕԹ ԴԵՐԱՍԱՆ Տանիէլ Ժըլէնի 14 ամսու մանչը մեռաւ առջի օր : Երախան չորս դեղահատ կլլած էր, օգտուելով վայրկեան մը անհսկողութենէ եւ թունաւորուած :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Խաչիկ Ալթունեան (Լիոն), Այրի Տիկին Մարի Պետրոսեան, Տէր եւ Տիկին Նազարէթ Պետրոսեան, Պ. Նշան Պետրոսեան (Էքս լէ Պէն), ինչպէս նաեւ իրենց պարագաները, խորին շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ, հեռագրով, նամակով եւ ծաղկեպսակով մասնակցեցան իրենց սուգին, իրենց սիրեցեալ կնոջ, աղջկան, քրոջ եւ պզտականին Զապէլ Ալթունեանի վաղահաս եւ կսկծալի մահուան առթիւ :

●

Այրի Տիկին Բարսեղ Նշանեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Այրի Տիկին Եփրեմեան, Նշանեան եւ Տէր Յակոբեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, փեսին եւ եղբօր

ԲԱՐՍԵՂ ՆՇԱՆԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Վահէ Սիրաքեան, Տէր եւ Տիկին Ժորժ Պետարեան, եւ համայն ընտանիքը իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ՝

Օր. ԷՊՐՈՒ ՍԻՐԱՔԵԱՆԻ

տխուր մահուան առթիւ :

## ԿԱՐԵՒՈՐ ԿՈՉ

●

Նոր արշաւ մը Լիոնի եկեղեցւոյ եւ Ազգ. Տան շինութեան համար :

Լիոնի Ազգ. Միութեան եւ Եկեղեցաշէն Յանձնախումբը Յուլիս 25ին գումարած խառն ժողովին տեղեկացաւ շինութեան յառաջացեալ քաջալերական վիճակին եւ սակայն որպէսզի աշխատանքը չկասեցնենք սոխողական պահանջ մը մեզ կը հարկադրէ ձեռնարկելու նոր նուէրներ հաւաքելու գործին : Ժողովին անդամներու մասնակցութեամբ անմիջապէս գոյացաւ 400.000 Ֆրանք :

Նուէրներ պիտի հաւաքուին մեր ժողովուրդի բոլոր խաւերէն :

Կոչ կ'ընենք մասնակցիլ անխտիր եւ սիրայիր ընդունելութիւն վերապահել Նուէր հաւաքողներուն : Մարմնին մեր վարկը այդ կը պահանջէ :

Լիոնէն դուրս ապրող մեր հայրենակիցներէն կը խնդրուի օգնել մեր այս ձեռնարկին օր առաջ կարենալ վերջացնելու համար : Նուէրները ղրկել.—

C. C. P. Lyon 3495-68
Comité de Construction de l'Eglise et Foyer Arméniens de Lyon.
Ou :
Union Nationale et Euphorie de l'Eglise Arménienne
69 Rue Louis Blanc, LYON

Imp. ARAXES, 46, Rue Richer Paris-9e

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐԸ

### ԱՏԼԱՆՏԵԱՆԻ ԱՓԻՆ

Վայրը՝

Olonne-sur-Mer (Vendée)

3 Օգոստոսէն 14 Սեպտեմբեր

Արձանագրութեան եւ մանրամասնութեան համար դիմել՝

Edouard Mavian, 116 Rue Réaumur,
Paris 2ème. CEN 06-42

Բանակողները չմոռնան բժշկական վկայական բերել :

Փարիզեան շրջանի այն բանակողները, որ պիտի երթան պիյէ ճոլէճթիփով, ամէնէն ուշը մինչեւ ԵՐԵՔՇԱԲԹԻ պէտք է իրենց անունը եւ տոմսին գինը հասցնեն ընկեր Եդ. Մաւեանի :

Մեկնում՝ կիրակի, Օգոստոս 4 : առտուան ժամը 7ին : Հաւաքուիլ՝ ժամը 6ին,

Point de rassemblement H :
Gare du Maine Départ.

ՄԱՐՍԷՅԼ. — Արձանագրութիւններուն համար դիմել ընկեր Լեւոն Գլընճեանին, էփրըբրի Թիւպանօ, 18 րիւ Թիւպանօ :

## Կ'ՈՒԶՈՒԻ՝

Ուշիմ, կարող, աշխատասէր եւ գործէ հասկցող մէկը, մեր վաճառատան մէջ աշխատելու համար, իբր գործակատար, յաճախորդներու ապսպրանքները պատրաստող :

Դիմել Պահատուրեան վաճառատունը՝
246, Rue Vendôme - LYON

## ԵՂԱՆԱԿԻ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

Կազմակերպուած՝ «Հերոններու Օր»ուան եւ Խանասորի արշաւանքի 60րդ տարեդարձին առթիւ, Օգոստոս 4, կիրակի, առաւօտէն մինչեւ իրիկուն, Վալապրի հանրածանօթ, օդասուն եւ ընդարձակ անտառին մէջ :

Նախաձեռնութեամբ՝ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի, մասնակցութեամբ՝ բոլոր խումբերու եւ ենթակոմիտէներու, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի շրջանային վարչութեան, ինչպէս նաեւ Կապոյտ Խաչի Շրջ. վարչութեան եւ մասնաճիւղերու :

Ներկայ պիտի ըլլան եւ պիտի խօսին՝ Կարտանի քաղաքապետ Պ. Վիքթոր Սաւին եւ Պ. Լերտա (ընկերվարական) :

Կը նախագահէ՝ Ընկ. ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

Կը խօսի՝ Ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ

Երգեր, արտասանութիւններ, նուագ եւ հայկական ու եւրոպական պարեր :

Պ. Ալէքս Մնակեան ագորաէոնի վրայ պիտի նուագէ հայ ժողովրդական երգեր եւ պարերգներ (Փարիզի երաժշտանոցէն եւ Լիբանանի ագորաէոնի ախոյեան) :

Ծոխ պիւֆէ մատչելի գիներով՝ սանտուիչ, շամփուրով խորոված, զովացուցիչ ըմպելիներ եւ այլն :

Մուտքը ազատ է :

Երթեւեկի համար դիմել մեր խումբերուն եւ ենթակոմիտէներուն : Կարելի է առնել նաեւ Էքս երթեւեկող հանրակառքեր եւ օթօքառեր :

Մարսէյլ քաղաքին մէջ բնակողներուն

Խանասորի արշաւանքի տօնակատարութեան առթիւ Վալապր երթալու համար, յատուկ օթօկառեր վարձուած են : Արձանագրուելու համար դիմել ընկեր Աստուր Քէօսէեանին (Փլաս տ'Էքս), ընկեր Ա. Պետրոսեանին (Տայէս) եւ Պ. Գ. Ծերէկեանին :

Մեկնումը տեղի կ'ունենայ Փլաս տ'Էքսէն :

ՊՕՄՈՆ. — Անոնք որ կը փափաքին մասնակցիլ այս տօնակատարութեան, պէտք է արձանագրուին օթօքարի համար մինչեւ 2 ՕԳՈՍՏՈՍ, հետեւեալ ընկերներու մօտ. — Յ. Պանտիկեան, Ն. Դարբինեան, Կ. Կարապետեան, Սերժ Սարգիսեան :

